Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ

№ 23 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1951

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

էջ



Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 2—52—78*

# ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԱՏԱՐԱՆԸ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՍԵՓԱԿԱՆՈՒԹՅԱՆ, ՔԱՂԱՔԱՑԻՆԵՐԻ ԻՐԱՎՈՒՆՔՆԵՐԻ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅԱՆ ԻՐԱԳՈՐԾՈՂՆ Է

*Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան տապալեց բուրժուա-կալվածատիրական կարգերը ցարական Ռուսաստանում և իշխանությունը հանձնեց աշխատավոր ժողովրդի ձեռքը։ Բանվորների և գյուղացիների սոցիալիստական պետությունը շահագործողներից խլեց(?) բռնագրաված հողը, նրա ընդերքը, ջրերն ու անտառները, գործարաններն ու ֆաբրիկաները, հանքերն ու տրանսպորտը, ինչպես նաև բանկային ու այլ հարստությունները, հռչակեց որպես պետական սեփականություն, այսինքն համաժողովրդական ունեցվածք։*

*Ժողովրդական տնտեսության սոցիալիստական վերակառուցման շնորհիվ Սովետական Միությունում առհավետ ջախջախվեցին ու լիկվիդացվեցին շահագործողներն ու շահագործական հարաբերությունները և այդպի-*

սիք ծնելու հիմքը՝ արտադրության միջոցների մասնավոր սեփականության սիստեմը: ՍՍՌՄ-ի տնտեսական հիմքը կազմեցին տնտեսության սոցիալիստական սիստեմը և արտադրության գործիքների ու միջոցների սոցիալիստական սեփականությունը:

Համաձայն Ստալինյան Կոնստիտուցիայի, սոցիալիստական սեփականությունը ՍՍՌՄ-ում ունի կամ պետական սեփականության ձև՝ համաժողովրդական ունեցվածք, կամ կոոպերատիվ-կոլտնտեսային սեփականության ձև՝ առանձին կոլտնտեսությունների սեփականություն, կոոպերատիվ միավորումների սեփականություն:

Ստալինյան հնգամյակների ընթացքում մեր Հայրենիքը հետամնաց ագրարային երկրից վերածվեց առաջավոր ինդուստրիայի, զարգացած գյուղատնտեսության երկրի, որի հետևանքով աննախընթաց թափով աճեցին ինչպես պետական, այնպես էլ կոոպերատիվ կոլտնտեսային սեփականությունը և առանձին քաղաքացիների նյութական միջոցները. ստեղծվեց արդյունաբերական ապրանքների, գյուղատնտեսական մթերքների առատություն:

ՍՍՌՄ-ի աշխատավորության առատ, ապահով եկամուտների հիմքը սոցիալիստա-



կան սեփականությունն է, ուստի այն հանդիսանում է մեր ժողովրդի հարստության ու հզորության աղբյուրը, մեր Հայրենիքի հետագա է՛լ ավելի բարգավաճման ու ամրապնդման աղբյուրը, բոլոր աշխատավորների ունևոր, կուլտուրական կյանքի աղբյուրը:

Կապիտալիստական երկրներում սեփականությունը կուտակված է շահագործողների՝ կապիտալիստների ու կալվածատերերի ձեռքում, որով էլ նրանք կեղեքում են ժողովրդական լայն մասսաներին:

Իր քրտինքով ստեղծած բարիքներից զուրկ ժողովուրդը ատելությամբ է լցված դեպի այդ կարգերը, այդ սեփականությունը, որովհետև հենց սեփականատիրական այդ ձևն է, որ օրըստօրե լայնացնում ու խորացնում է աղքատությունը:

Սոցիալիստական սեփականությունն, ընդհակառակը, հանդիսանում է ՍՍՌՄ քաղաքացիների ազատ, ուրախ, երջանիկ և ապահով կյանքի աղբյուրը: Պարզորեն գիտակցելով այդ, սովետական քաղաքացիները մեծագույն նվիրվածությամբ են աշխատում սոցիալիստական սեփականության հարստացման ուղղությամբ, աչքի լույսի պես պաշտպանելով այն՝ իրագործում են Ստալինյան Կոնստիտուցիայի այն սկզբունքը, որը

ՍՍՌՄ-ի յուրաքանչյուր քաղաքացու պարտավորեցնում է պահպանել և ամրապնդել հանրային, սոցիալիստական սեփականությունը, որպես սովետական կարգերի սրբազան և անձեռնմխելի հիմքի:

«Եթե կապիտալիստները մասնավոր սեփականությունը հռչակեցին սրբազան ու անձեռնմխելի՝ ձեռք բերելով իր ժամանակին կապիտալիստական հասարակարգի ամրապնդումը,— ասում է ընկեր Ստալինը,— ապա մենք, կոմունիստներս, առավել ևս սրբազան ու անձեռնմխելի պետք է հռչակենք հանրային սեփականությունը, որպեսզի դրանով իսկ ամրացնենք տնտեսության սոցիալիստական նոր ձևերը...: Թույլ տալ հանրային սեփականության գողացումն ու հափշտակումը,— միևնույն է՝ բանը վերաբերում է պետական սեփականությանը, թե կոոպերատիվ ու կոլտնտեսային սեփականությանը,— և անցնել նման կոնտրռևոլյուցիոն այլանդակությունների կողքով,— նշանակում է՝ նպաստել խարխլելու սովետական հասարակարգը, որը հենվում է հանրային սեփականության վրա, որպես իր բազայի վրա»:

Հանուն հանրային սեփականության սովե-



տական մարդիկ աշխատում են ու պայքարում, իսկ հարկ եղած դեպքում՝ զենքը ձեռքին պաշտպանում այն: Սակայն դեռևս կան ու լինում են մարդիկ, որոնք ձգտում են նույնիսկ շռայլել ուրիշների հաշվին, այսինքն զբաղվել հակահասարակական արարքներով:

Սովետական արդարադատության օրգանները, այդ թվում առաջին հերթին ժողովրդական դատարանները, անընդմեջ պայքար մղելով սոցիալիստական սեփականությունը հափշտակողների դեմ, միաժամանակ սովետական քաղաքացիներին դաստիարակում են սոցիալիստական սեփականությունը սրբությամբ պահպանելու, սոցիալիստական համակեցության օրենքները հարգելու ոգով:

Իրենց գործունեության ընթացքում ժողովրդական դատարանները աշխատավորներին պարզաբանում են կապիտալիզմից ժառանգություն մնացած և որոշ մարդկանց մոտ դեռ պահպանվող հափշտակման ողջ վնասակարությունը և, դրա հետ միասին, կենսագործում Սովետական պետության կողմից ձեռնարկված միջոցառումները ընդդեմ գողերի, հափշտակողների, դատարկաշրջիկների:

Ձեռնարկված միջոցառումների մեջ առանձնապես կարևոր են «Պետական հիմնարկնե-

րի, կոլտնտեսությունների, կոոպերացիայի
ունեցվածքը պաշտպանելու և հասարակական
սոցիալիստական սեփականությունն ամրա-
պնդելու մասին» 1932 թ. օգոստոսի 7-ի օ-
րենքը, ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախա-
գահության 1947 թ. հունիսի 4-ի Հրամանա-
գիրը՝ պետական, հասարակական ունեց-
վածքը հափշտակողներին քրեական պա-
տասխանատվության ենթարկելու մասին և
այլն:

Պետական, հասարակական ունեցված-
քից կրկնակի անգամ հափշտակություն կա-
տարող, կամ խմբակային ձևով, ինչպես նաև
խոշոր չափերի հասնող հափշտակություն
կատարող անձինք այդ Հրամանագրի 2-րդ
հոդվածի համաձայն դատարանի տրոշմամբ
ենթարկվում են 10-ից մինչև 25 տարվա
ազատազրկության՝ ամբողջ գույքի բռնագրավ-
մամբ: Հանրային սեփականության նկատ-
մամբ ոտնձգություն կատարողները պետք է
ենթարկվեն վճռական հակահարվածի, որով-
հետև, ընդառաջելով սովետական ժողո-
վրդի կամքին, Ստալինյան Կոնստիտուցիան
նշում է, որ հանրային սոցիալիստական սե-
փականության դեմ ոտնձգություն անող ան-
ձերը ժողովրդի թշնամիներ են:

Մեծ առաջնորդներ Լենինը և Ստալինը



շատ անգամ են ընդգծել ժողովրդի թշնամի-
ների դեմ անհաշտ պայքարի անհրաժեշ-
տությունն ու կարևորությունը:

«Խիստ անխնա լինել ժողովրդի այդ թըշ-
նամիների, սոցիալիզմի թշնամիների, աշ-
խատավորության թշնամիների նկատմամբ,—
գրում է Վ. Ի. Լենինը,— ո՛չ թե կյանքի,
այլ մահու պատերազմ... խաբեբաներին,
պորտաբույծներին ու խուլիգաններին...»:

Առաջնորդի այդ ցուցումը կենսագործելու
մեջ վճռական դեր են կատարում սովետական
արդարադատության օրգանները, այդ թվում
և ժողովրդական դատարանները: Որպես պրո-
լետարիատի դիկտատուրայի օրգաններ, սո-
վետական դատարանները չափազանց խոշոր
աշխատանք են կատարել մեր սոցիալիստա-
կան տնտեսության զարգացման բոլոր է-
տապներում: Ի դեմս դատական օրգանների,
դիկտատուրայի այդ հզոր լծակի, Սովետա-
կան պետությունը ջախջախիչ հարված է
հասցրել ժողովրդի թշնամիներին:

Իրենց պրակտիկ գործունեության մեջ,
դատական օրգաններն իրականացնում են
սովետական արդարադատությունը, որի
խնդիրն է պաշտպանել ոտնձգություններից.

ա) Սովետական Սոցիալիստական Ռես-
պուբլիկաների Միության հասարակական և

պետական կառուցվածքը, տնտեսության սոցիալիստական սիստեմը և սոցիալիստական սեփականությունը.

բ) ՍՍՌՄ քաղաքացիների քաղաքական, աշխատանքային, բնակարանային, անձնական, գույքային և այլ իրավունքներն ու շահերը։

գ) Պետական հիմնարկությունների, ձեռնարկությունների, կոլտնտեսությունների, կոոպերատիվ և հասարակական այլ կազմակերպությունների իրավունքներն ու օրենքով պաշտպանվող շահերը։

«ՍՍՌՄ արդարադատության խնդիրն է,— ասված է ՍՍՌՄ միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաների դատարանակազմության մասին օրենքի 2-րդ հոդվածի վերջին մասում,— ապահովել սովետական օրենքների ճշգրիտ և անշեղ կատարումը ՍՍՌՄ բոլոր հիմնարկությունների, կազմակերպությունների, պաշտոնատար անձանց և քաղաքացիների կողմից»։

Իրագործելով այդ խնդիրները՝ դատական օրգանները պատժում, այսինքն սովետական օրենքների սահմաններում կազմակերպված հարկադրանք են գործադրում ապադասակարգայնացված, հանցագործ տարրերի



նկատմամբ ու դրանով իսկ պաշտպանում ու գործնականում իրականացնում են սոցիալիստական սեփականության սրբազանության ու անձեռնմխելիության մասին Կոնստիտուցիայի սկզբունքները։

Ի կատարումն այդ խնդիրների՝ ժողովրդական դատարանները պատասխանատվության են կանչում Սովետական պետության օրենքները խախտողներին ու դրանով իսկ պաշտպանում կոմունիզմ կառուցող աշխատավոր ժողովրդի՝ օրենքով երաշխավորված իրավունքները։

Իրագործելով այդ խնդիրները, սովետական դատարաններն ընդհանրապես և ժողովրդական դատարանները մասնավորապես, հսկայական դրական ծառայություն են ցույց տալիս մեր Հայրենիքին՝ սոցիալիստական հասարակության մեջ դեռևս գտնվող հետամնաց, բուրժուական մնացուկների ազդեցությամբ գործողներին վերադաստիարակելու ուղղությամբ։

Սովետական օրինականության պաշտպանության շնորհակալ գործում խոշոր է ժողովրդական դատարանների դերը։ Վերջիններս արդարադատության օրգանների ամենամասսայական այն օղակներն են, որոնք անմիջապես շփվում են ժողովրդի հետ։ Բա-

*ցի այդ, նրանք են քննարկում քրեական, քաղաքացիական գործերի բացարձակ մեծամասնությունը և հաճախ վերջնական ընթացք տալիս։*

*Բոլոր այդ գործերը ըստ օրենքի և ճիշտ ժամանակին քննարկելն ու լուծելը անխզելիորեն կապված են սովետական քաղաքացիների շահերի պաշտպանման հետ, օրենքով նրանց տրված իրավունքների սիստեմատիկ ամրապնդման հետ։*

*Հետևապես, սովետական դատարանը ժողովրդական լայն մասսաներին մոտիկ կանգնած, նրա շահերը հարգող, պաշտպանող, այդ շահերը հետզհետե ամրապնդող օրգան է։*

*Ահա թե ինչու ժողովրդական դատարանների առաջիկա ընտրությունները ավելի ևս կբարելավեն այդ օրգանների աշխատանքը, դրանով իսկ սոցիալիստական սեփականության՝ համաժողովրդական ունեցվածքի, ինչպես նաև քաղաքացիների իրավունքների պաշտպանության ու ամրապնդման գործը։*

*Բ. ԱՄԻՐԽԱՆՅԱՆ*
Իրավաբանական գիտությունների թեկնածու

---



# ԼԵՆԻՆԸ ԵՎ ՍՏԱԼԻՆԸ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԴԱՏԱՐԱՆԻ ԵՎ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՕՐԻՆԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

**«...Մենք առանց հին դատարանը բարեփոխելու՝ միանգամայն այն փշրելու հանձնեցինք: Մենք դրանով ճանապարհ մաքրեցինք իսկական ժողովրդական դատարանի համար և այդ արինք ոչ այնքան ռեպրեսիաների ուժով, որքան մասսաների օրինակով, աշխատավորների հեղինակությամբ, առանց ձևականությունների՝ շահագործման գործիք հանդիսացող դատարանը դարձրինք սոցիալիստական հասարակության հաստատուն հիմքերի վրա կանգնած դաստիարակության գործիք»:**

Վ. Ի. ԼԵՆԻՆ: Երկեր, 4-րդ հրատ., հատ. 26, էջ 567:

«Մենք պետք է ինքներս դառնանք: Քաղաքացիները պետք է անխտիր մասնակցեն դատարանին և երկրի կառավարմանը: Իսկ մեզ համար կարևոր է պետության կառավարմանը մասնակից դարձնել անխտիր բոլոր աշխատավորներին»:

Վ. Ի. ԼԵՆԻՆ: Երկեր, 4-րդ հրատ., հատ. 27, էջ 150:

«Ամենափոքր օրինազանցությունը, սովետական կարգի ամենափոքր խախտումն արդեն ս ո ղ ա ն ց ք է, որ անմիջապես կօգտագործեն աշխատավորների թշնամիները...»:

Վ. Ի. ԼԵՆԻՆ: Երկեր, 4-րդ հրատ., հատ. 29, էջ 692:

«... Բուրժուական պետական ապարատը մասսաներից վեր է կանգնած, որի պատճառով նա բաժանված է բնակչությունից անանցանելի պատնեշով և իր բուն ոգով խորթ է ժողովրդական մասսաներին: Մինչդեռ սովետական պետական ապարատը ձ ու լ վ ու մ է մասսաների հետ, որովհետև նա չի կարող և չպետք է մասսաներից վեր կանգնած լինի, եթե նա ուզում է իրեն պահպանել հենց որպես սովետական պետական ապարատ, որովհետև նա չի կարող խորթ



լինել այդ մասսաներին, եթե նա իրոք ուզում է ընդգրկել աշխատավորների միլիոնավոր մասսաներին: Այս է սովետական պետական ապարատի սկզբունքային տարբերություններից մեկը բուրժուական պետության ապարատից»:

Ի. ՍՏԱԼԻՆ: Երկեր, հատ. 7, էջ 176:

«Մեր ժամանակվա ռևոլուցիոն օրինականությունն իր սուր ծայրով ուղղված է... դողերի ու վնասարարների դեմ հանրային տնտեսության մեջ, խուլիգանների ու հանրային սեփականությունը հափշտակողների դեմ: Հետևաբար, մեր ժամանակներում ռևոլուցիոն օրինականության հիմնական հոգսը հանրային սեփականությունը պահպանելն է, և ոչ թե որևէ այլ բան:

Ահա թե ինչու հանրային սեփականության պահպանման համար պայքարելը, Սովետական իշխանության օրենքներով մեզ տրամադրվող բոլոր միջոցներով ու բոլոր եղանակներով պայքարելը-պարտիայի հիմնական խնդիրներից մեկն է:

Ի. ՍՏԱԼԻՆ: Երկեր, հատոր 13, էջ 234:

«Թույլ տալ հանրային սեփականության գողացումն ու հափշտակումը,— միևնույն է՝ բանը վերաբերում է պետական սեփականությանը, թե կոոպերատիվ ու կոլտնտեսային սեփականությանը,— և անցնել նման կոնտրռևոլյուցիոն այլանդակությունների կողքով,— նշանակում է՝ նպաստել խարխլելու Սովետական հասարակարգը, որը հենվում է հանրային սեփականության վրա, որպես իր բազայի վրա»:

Ի. ՍՏԱԼԻՆ: Երկեր, հատ. 13, էջ 233:



## ԶՐՈՒՅՑԸ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԱՌԱՎԵԼ ԿԱՐԵՎՈՐ ՁԵՎԵՐԻՑ Է

*Ճշմարտացի, մարտական ագիտացիան մեր պարտիայի ձեռքին հանդիսանում է ամենաուժեղ զենքերից մեկը՝ մասսաներին կոմունիզմի ոգով, սովետական հայրենասիրության ոգով դաստիարակելու գործում: Ագիտացիոն աշխատանքի նպատակն է՝ մոբիլիզացնել մասսաների ուժերը մեր երկրի առջև դրված խնդիրները ժամանակին և անթերի կատարելու համար, կազմակերպել մեր Հայրենիքի հզորությունն ու փառքը է՛լ ավելի ամրապնդելու համար սովետական մարդկանց անձնվեր աշխատանքը:*

*Բոլշևիկյան ագիտացիան իր առջև դրված խնդիրները իրականացնում է բազմազան ձևերով ու մեթոդներով, ինչպես օրինակ՝ զեկուցումներն ու ելույթները ժողովներում, միտինգներում, խմբական և անհատական*

զրույցները, թերթերի, ամսագրերի, գրքերի կոլեկտիվ ընթերցանությունները և այլն։

Ագիտացիայի այս ձևերից յուրաքանչյուրը կիրառվում է նպատակահարմար, նայած իրադրությանը և խնդիրներին։ Այն դեպքում, եթե մեր երկրի, կամ հենց ձեռնարկության կյանքում տեղի են ունենում որևէ խոշոր փոփոխություններ, որի վրա պետք է բևեռել բոլորի ուշադրությունը, մոբիլիզացնել մարդկանց ուժերը, այդ դեպքում անհրաժեշտ է հրավիրել ժողով կամ միտինգ։ Իսկ երբ անհրաժեշտ է աշխատավորությանը տեղյակ պահել մեր երկրում տեղի ունեցող աշխատանքային նախաձեռնությունների, հաջողությունների, կամ միջազգային իրադարձությունների հետ, կազմակերպվում են զեկուցումներ, կոլեկտիվ ընթերցանություններ։

Սակայն զեկուցումներով ու ընթերցանությամբ չի կարելի սահմանափակվել, և դա ամենից առաջ այն պատճառով, որ ագիտացիոն աշխատանքի այդ ձևերը չեն կարող փոխարինել զրույցին։ Զրույցը հնարավորություն է տալիս ագիտատորին անմիջական շփման մեջ մտնել ունկնդիրների հետ, հաշվի առնել նրանց ցանկությունները։ Զրույցի ժամանակ միայն ագիտատորը հնարա-



վորություն ունի հաշվի առնելու, թե ունկնդիրների համար ինչը պարզ է և ինչը անհրաժեշտ է կրկին, կամ ավելի խորացված և մանրամասն բացատրել։

Քաղաքական աշխատանքում ագիտացիոն զրույցի առավել նշանակալից կողմն այն է, որ զրույցի թեման ակտիվ քննարկման է ենթարկվում բոլոր ունկնդիրների կողմից, ագիտատորի նախապատրաստած նյութի շուրջը հանդես գալով, ունկնդիրները լրացուցիչ փաստեր ու պատճառաբանություններ են բերում, ծավալում են քննադատությունն ու ինքնաքննադատությունը, վեր են հանում աշխատանքում եղած թերությունները, կամ աշխատանքի այս կամ այն բնագավառը բարելավելու համար առաջարկում են ավելի նպատակահարմար աշխատանքի եղանակներ, հայտաբերում նոր միջոցներ։

«Խիստ արժեքավոր է աշխուժի բերել մարդկանց, մտքերի փոխանակության դրդել նրանց, որպեսզի նրանք արտահայտվեն,— ասում է Մ. Ի. Կալինինը,— այն ժամանակ ժողովն աշխույժ կընթանա, բանվորները սիրով կխոսեն և այդպիսի ժողովի օգուտն անվիճելի կլինի»։

Կոլտնտեսային շինարարության առաջին տարիներին, երբ անհրաժեշտ էր գյուղացիներին համոզել կոլեկտիվ տնտեսության առավելությունների մեջ, ընկեր Ստալինն ասում էր, որ շարքային գյուղացիները հաճախ «Կոլտնտեսային շարժման երևելի ագիտատորներ են, որովհետև հօգուտ կոլտնտեսությունների, նրանք կգտնեն գյուղացիների մնացած մասի համար հասկանալի ու ընդունելի այնպիսի փաստարկներ, որոնց մասին մենք, որակյալ բոլշևիկներս, երաչել անգամ չենք կարող»։

Զրույցներն անցկացնելու նշանավոր օրինակներ են տալիս մեր պարտիայի առաջնորդներ Լենինը և Ստալինը։ Լենինի և Ստալինի կենսագրություններից հայտնի են, որ նրանք իրենց ռևոլուցիոն գործունեությունը սկսել են մասսաների մեջ պրոպագանդայով ու ագիտացիայով։

Պետերբուրգի հին բանվորները իրենց հիշողություններում գրում են այն խոր տպավորությունների մասին, որ թողնում էին անցյալ դարի 90-ական թվականներին բանվորական խմբակներում Լենինի ունեցած զրույցները։



Լենինի խմբակի անդամներից մեկը՝ բանվոր Ի. Վ. Բաբուշկինը, այդ զրույցների մասին պատմում էր.

«Խմբակը կազմվեց 6 հոգուց, 7-րդը՝ դասախոսն էր. ու սկսվեցին պարապմունքները քաղաքատնտեսությունից, Մարքսից։ Դասախոսն այդ գիտությունը մեզ համար շարադրում էր բերանացի, առանց որևէ տետրակի, հաճախ աշխատելով մեզ դրդել կամ հակաճառությունների, կամ մեր մեջ առաջ բերել վեճի բռնվելու ցանկություն և այդ դեպքում գրգռում էր՝ ստիպելով մեկին՝ ապացուցելու մյուսին տվյալ հարցի վերաբերյալ իր տեսակետի ճշտությունը։ Այդպիսով մեր դասախոսությունները կրում էին շատ կենդանի, հետաքրքրական բնույթ»։

Զրույց անցկացնելու Լենինի օրինակին հետևելով, մեր ագիտատորներն իրենց ունկընդիրների մեջ պետք է հրահրեն ինքնուրույն, կենդանի միտքը, իսկ այդ հնարավոր է այն դեպքում, երբ ագիտատորը խորն է ուսումնասիրում ունկնդիրների շահագրգռվածությունը տվյալ զրույցի թեմայի նկատմամբ, երբ ագիտատորը կարողանում է ագիտացիան կապել ունկնդիրների գործնական աշխատանքի, նրանց առջև դրված խնդիրների հետ։

Պրոպագանդիստական և ագիտացիոն աշխատանքներում ընկեր Ստալինը հաճախ է դիմել զրույցի մեթոդին։ Որպես օրինակ կարելի է բերել այն զրույցները, որ ընկեր Ստալինը անց էր կացնում Անդրկովկասի բանվորների շրջանում անցյալ դարի 90-ական թվականներին։

Ծանոթանալով այն ժամանակ բանվորների համար կազմակերպվող պարապմունքների հետ, ընկեր Ստալինը համոզվում է, որ այդ պարապմունքներն անցնում են ծայրաստիճան վերացականորեն, որ զըրույցներն սկսվում են հեռվից՝ նախնադարյան կոմունիզմի և ապա ստրկատիրական հասարակության վերաբերյալ պատմությամբ։ Այդ պատճառով էլ բանվորները չեն մասնակցում զրույցին, չեն կարողանում քննարկել իրենց հուզող օրվա հրատապ հարցերը։ Ելնելով այդ դրությունից, ընկեր Ստալինը որոշում է անձամբ անցկացնել մի քանի զրույց։ Խմբակի առաջին պարապմունքը ընկեր Ստալինն սկսում է այս հարցով. «Ինչու՞ ենք մենք չքավոր»։ Բանվորները մոտավորապես այսպես են պատասխանում. «Չքավոր ենք այն պատճառով, որ կապիտալներ չկան»։ Այն ժամանակ ընկեր



Ստալինը հարցնում է. «Իսկ կապիտալիստների մոտ կապիտալներ որտեղի՞ց դուրս ընկան։ Եկեք քննարկենք այս հարցը»։ Այս հարցի քննարկման ժամանակ բացահայտվեց կապիտալիստական շահագործման ողջ սիստեմը, բանվորներն ակտիվ մասնակցություն ունեցան, զրույցն անցավ շատ աշխույժ։

Ընկեր Ստալինի հաջորդ զրույցը նվիրված էր «Ինչու՞ ենք մենք իրավազուրկ» թեմային։ Բանվորների մեջ աշխուժություն առաջացավ։ Զրույցի թեման ակտուալ էր և հուզող։ Ընկեր Ստալինը պարզ, բոլոր ունկնդիրներին ծանոթ փաստերով վեր հանեց իրավազրկության բուն պատճառները, նա ցույց տվեց ցարական ինքնակալության կառուցվածքը, ցույց տվեց, թե ի՞նչ դասակարգերի վրա է հիմնվում ռուսական ցարիզմը։

Ընկեր Ստալինի երրորդ զրույցը պատասխանում էր այս հարցին. «Ի՞նչպես այդ բոլորը փոխել»։ Այդ զրույցի ժամանակ ընկեր Ստալինը բացահայտեց բանվորներին պարտիայի ծրագիրը, նրա խնդիրներն ու պայքարի տակտիկան, բանվորներին սովորեցնելով նրանց կոնկրետ անելիքները այդ պայքարում։

Թբիլիսիի հին բանվոր Գ. Նինուան պատմում է այն տպավորության մասին, որ թողել էին ունկնդիրների վրա ընկեր Ստալինի զրույցները. «Հիշում եմ, առաջին իսկ խոսքերից մեզ հրապուրեց ընկեր Ստալինի ճառի վճիտությունն ու պարզությունը... ընկեր Ստալինի ելույթները նմանվում էին զրույցի։ Նա, պատահում էր, չէր անցնի նոր հարցին, մինչև չհամոզվեր, որ մենք իրեն հասկացանք, իր խոսքերը յուրացրինք։ Ընկեր Ստալինի հարցերին պատասխանելով, մենք փաստեր էինք բերում մեր բանվորական կյանքից, պատմում էինք, թե ինչ է կատարվում գործարաններում, մեզ ինչպես են շահագործում ադմինիստրացիան, կապալառուները, վարպետները։ Ընկեր Ստալինը հատկապես աշխուժանում էր, երբ շոշափվում էր այս թեման. Նա բանվորներին շատ հարցեր էր տալիս, իսկ հետո եզրակացություններ անում։ Այդ եզրակացությունները վճռական, ղեկավար նշանակություն ունեին ռևոլյուցիոն շարժման համար։ Ընկեր Ստալինը մեր ուսուցիչն էր. բայց նա հաճախ էր ասում, որ ինքն էլ բանվորներից է սովորում»։



Մեր պարտիան իր պայքարի անցած տարիների ընթացքում ագիտացիոն աշխատանքի մեծ փորձ է կուտակել։ Ագիտատորները պետք է սիստեմատիկաբար ուսումնասիրեն այդ հարուստ փորձը և ղեկավարվեն դրանով։ Լավ ագիտատոր դառնալու համար հարկավոր է, ինչպես ասել է ընկեր Լենինը, «բավականին սովորել ու փորձառություն կուտակել»։

Աշխատավորության շրջանում քաղաքական-մասսայական աշխատանքը հաջող կազմակերպելու, ընթացիկ իրադարձությունններն ավելի խորը ըմբռնելու և ապա այդ իրադարձությունների մասին մատչելի ու բովանդակալից զրույցներ անցկացնելու անհրաժեշտությունից ելնելով, պետք է, որ մեր ագիտատորները ընդլայնեն իրենց մտահորիզոնը, սիստեմատիկաբար զբաղվեն ինքնակրթությամբ։ Անհրաժեշտ է, որ ագիտատորները անընդմեջ ուսումնասիրեն Լենինի և Ստալինի երկերը, տիրապետեն մարքսիզմ-լենինիզմին։

# ԻՆՉՊԵՍ ԵՄ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒՄ ԱԳԻՏԱՑԻԱՆ ՀԱՆՔԱՓՈՐՆԵՐԻ ՇՐՋԱՆՈՒՄ

Ղափանի հանքվարչության մյուս հանքերի կոլեկտիվների թվում, այս տարվա ըսկըզբին Ղափան—Ալավերդի սոցիալիստական մրցության մեջ մտավ նաև № 1—2 հանքի կոլեկտիվը, պարտավորություն ըստանձնելով 1951 թվականի պլանը կատարել ժամկետից շուտ՝ դեկտեմբերի 21-ին։

Պարտիական կազմակերպության ղեկավարությամբ, հանքի կոլեկտիվը մոբիլիզացրեց իր բոլոր ուժերը վերցրած պարտավորությունը պատվով կատարելու համար։ Հանքում լայնորեն ծավալվեց սոցիալիստական մրցությունը, հանքափորները սկսեցին աշխատել ավելի մեծ եռանդով։

Հանքափորների այդ անձնվեր, խանդավառ աշխատանքը տվեց իր փայլուն արդյունքները։ Այս տարվա անցած տասը ամիսների պլանը հանքը բոլոր ցուցանիշներով գերա-



կատարել է։ Հանքաքարի հանույթի պլանը կատարված է 104,5 տոկոսով, հանքաքարի մեջ պղնձի պարունակության պլանը՝ 102 տոկոսով։ Զգալի չափով գերակատարված են նաև լեռնահետախուզական, լեռնանախապատրաստական և հանքաքարի պոկման պլանները։ Անցյալ տարվա համեմատությամբ, մեծ չափով բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը, իջել է արտադրանքի ինքնարժեքը։

Հանքի պլանների կատարման, հանքափորների աշխատանքային խանդավառությունը կազմակերպելու և գլխավորելու գործում պարտիական կազմակերպության անմիջական օգնականները հանդիսացան ագիտատորները։ Կատարելով պարտիական կազմակերպության առաջադրանքները, ագիտատորները իրենց զրույցներով օգնեցին բանվորներին ավելի լավ աշխատելու, ավելի բորբոքեցին աշխատանքային խանդավառությունը։

Արդեն տասը տարի է, ինչ ես ագիտատոր եմ։ Իմ աշխատանքային փորձից ելնելով կարող եմ ասել, որ ինչի մասին էլ լինի ագիտատորի զրույցը, եթե այն լավ է նախապատրաստված, անց է կացվում հետաքըր-

քիր, նպատակասլաց, այդ զրույցը բարձրացնում է բանվորների աշխատանքային խանդավառությունը։

Բերեմ մի քանի օրինակներ իմ փորձից։

Վերջերս անցկացրեցի «ՍՍՌՄ քաղաքացիների հիմնական իրավունքներն ու պարտականությունները» թեմայով զրույց։ Եթե ես բավարարվեի միայն ՍՍՌՄ Կոնստիտուցիայից համապատասխան հոդվածների ընթերցանությամբ և բացատրությամբ, դրանով նոր բան ասած չէի լինի, քանի որ իմ ունկնդիրները բոլորն էլ շատ լավ գիտեն, թե Կոնստիտուցիայով ինչ իրավունքներ են ապահովված իրենց համար, կամ իրենք ինչ պարտականություններ ունեն։

Այդ զրույցը ես անցկացրի այսպես. նախօրոք հավաքած կոնկրետ փաստերով և օրինակներով բանվորներին պատմեցի, թե ինչպես սովետական մարդիկ, այդ թվում և մեր հանքահորի աշխատողները, լիովին կերպով օգտվում են Ստալինյան Կոնստիտուցիայով իրենց համար ապահովված իրավունքներից։ Խոսքս կոնկրետացնելով ասացի, որ միայն այս տարի մեր հանքի աշխատողներից 17 մարդ բուժվել ու հանգստացել են Սովետական Միության տարբեր սանա-



տորիաներում և հանգստյան տներում, 80 մարդ՝ մեզ մոտ կազմակերպված գիշերային սանատորիայում։ Թվերով ու փաստերով ցույց տվի, թե մեր պետությունը ամեն տարի ինչպիսի խոշոր գումարներ է ծախսում Ղափանի շրջանի աշխատավորների առողջապահության կարիքների համար, ինչպիսի լավ հիմքերի վրա է դրված մեր երեխաների ուսման, աշխատավորների սոցիալական ապահովագրության գործը։ Դրանից հետո թերթերից կարդացի մի քանի օրինակներ այն մասին, թե ինչպիսի իրավազուրկ, տնտեսական թշվառ պայմաններում են գտնվում աշխատավորները կապիտալիստական երկրներում։

Կոնկրետ օրինակներով ու փաստերով խոսեցի նաև ՍՍՌՄ քաղաքացիների պարտականությունների մասին։ Պարզաբանելով այն հարցը, որ ՍՍՌՄ-ում աշխատանքը աշխատանքի ընդունակ յուրաքանչյուր քաղաքացու պարտականությունն ու պատվի գործն է, ես օրինակ բերի հանքի լավագույն բանվորներին՝ հանքափորներ Ս. Էլչյանին, Մ. Մախսումովին, Օ. Սողոմոնյանին և ուրիշներին, որոնք իրենց նվիրված աշխատանքով ակտիվորեն մասնակցում են մեր Հայրենիքի հզորության, փառքի բարձրացմանը։

Զրույցն անցավ աշխույժ, ունկնդիրները իրենց հերթին զրույցը հարստացրին նոր փաստերով ու համեմատություններով։

Խաղաղության Պակտ կնքելու վերաբերյալ Խաղաղության Համաշխարհային Խորհրդի Դիմումի տակ ստորագրություններ հավաքելու կամպանիայի ընթացքում ունեցել եմ մի շարք զրույցներ։ Հենց առաջին զրույցում, խոսելով Սովետական Միության խաղաղասիրական քաղաքականության մասին և կոնկրետ օրինակներով ցույց տալով, թե ինչպես անգլո-ամերիկյան բլոկի հրձիգները պատրաստվում են նոր սպանդի մեջ քաշել մարդկությանը, ես ասի, որ խաղաղության պահպանման և ամրապնդման գործում մեր անելիքը այն կլինի, որ անձնուրաց աշխատանքով բազմապատկենք մեր Հայրենիքի հզորությունը։

Երբ խոսքս վերջացրի, ձայն խնդրեց լավագույն հորատող Հ. Գրիգորյանը.

— Ես մասնակցել եմ Հայրենական Մեծ պատերազմին։ Պատերազմը մեծագույն աղետ է ժողովուրդների համար։ Այդ աղետը կանխելու համար, մենք պետք է էլ ավելի լավ աշխատենք ի բարօրություն մեր Հայրենիքի։ Ես խոսք եմ տալիս՝ այսուհետև ավելի շատ հանքաքար տալ երկրին։



Այդպիսի պարտավորություններ ստանձնեցին նաև մյուս հանքափորները։

Այդ զրույցից հետո, իմ ունկնդիրները միահամուռ կերպով ստորագրեցին Խաղաղության Պակտը։ Նույն օրը մեր հերթափոխի բանվորները պլանից դուրս պոկեցին 25 տոննա հանքաքար։

Մի օրինակ ևս առաջավորների փորձի փոխանակումը կազմակերպելու բնագավառից։

Մեր հանքումն է աշխատում լավագույն հանքափոր Սպարտակ Էլչյանը։ Նրա աշխատանքի փորձը մասսայականացնելու համար նախ ինքս այն լավ ուսումնասիրեցի։ Էլչյանը աշխատում է խոր հորատման մեթոդով, որը նա սովորել է «Փոքր» հանքի անվանի հանքափոր Ն. Բալաշովից։ Միաժամանակ աշխատելով երկու հանքախորշում, Էլչյանը նրանցից յուրաքանչյուրում օրական փորում է 16 հորատանցք՝ երկու և ավելի մետր խորությամբ։ Դրա շնորհիվ պայթեցումից վեց տոննա ավելի հանքաքար է պոկվում, քան ոչ խոր հորատման ժամանակ։ Էլչյանը իր այդ հաջողություններին հասնում է շնորհիվ այն բանի, որ խնամքով է վերաբերվում մեխանիզմներին, լրիվ չափով օգտագործում է աշխատանքի ժամերը և, որ գլխավորն է՝

յուղին տիրապետում է իր գործի տեխնիկային։

Զրույցը կազմակերպեցի այսպես. նախ ձայն տվի Ելչյանին, որը պատմեց իր աշխատանքի մեթոդի մասին, ապա խոսեցի ես։ Վերլուծելով խոր հորատման մեթոդը և այն համեմատելով հանքի մյուս բանվորների աշխատանքի մեթոդների հետ, ցույց տվի, թե ինչպիսի լավ արդյունքների կհասնի մեր հանքը, եթե բոլոր հորատողներն աշխատեն Ելչյանի նման։

Իմ առաջ քաշած հարցը մեծ հետաքրքրություն և աշխուժություն առաջացրեց հանքափորների մեջ։ Նրանք սկսեցին հարցեր տալ ինձ, Ելչյանին, մի քանիսը ցանկություն հայտնեցին լինել Ելչյանի աշխատամասերում և տեղում տեսնել նրա աշխատանքը։ Եթե ես բավարարվեի միայն այդ զրույցով, ինչ խոսք, որ նպատակիս չէի հասնի։ Դրանից հետո ես իմ ունկնդիրների հետ եղա Ելչյանի աշխատավայրում, նրանց օգնեցի հաղթահարելու նոր մեթոդով աշխատանքի անցնելու հետ կապված դժվարությունները։ Հետագա զրույցների ժամանակ ամփոփում էի առաջին արդյունքները, վեր հանում նկատվող թերությունները։ Այս բանում ինձ մեծապես օգնում էին պարտկազմակերպու-



թյունը և հանքվարչությունը։ Այսպես աստիճանաբար մեր հանքի բոլոր հանքափորները անցան խոր հորատման մեթոդի և այժմ չկա մի հորատող, որ չկատարի իր առաջադրանքները։

Վերջերս իմ զրույցներից մեկը նվիրեցի Ղափանի հանքերի պատմության հարցին, քանի որ այդ հարցով շատ էին հետաքրքրվում մեր երիտասարդ հանքագործները։ Ինքս 1916 թվականից սկսած աշխատում եմ Ղափանի հանքերում և դրա շնորհիվ կարողացա շատ ցայտուն օրինակներ բերել այն մռայլ անցյալից, ապրուստի և աշխատանքի այն դաժան պայմաններից, որոնց մեջ ապրում և աշխատում էին հանքագործները։ Խոսեցի մեր № 1—2 հանքի անցյալի մասին, որն ունի ավելի քան հարյուր տարվա պատմություն։ Բանվորներն այստեղ աշխատում էին օրական 12—14 ժամ, ամբողջ աշխատանքը կատարում էին ձեռքով, հյուծվում ուժից վեր աշխատանքից և ամսական ստանում 15—20 ռուբլի և ապրում գետնափոր տնակներում։

Իմ խոսքն ընդհատելով, հանքի ամրացնող Ս. Պողոսյանը, որը մինչև ռևոլյուցիան էլ աշխատում էր այս հանքում, ասաց.

— Ճիշտ է, ճիշտ... անտանելի կյանք էր. Դուք, երիտասարդներդ այդ չեք կարող պատ-

*կերացնել,— խոսքերից հետո Պողոսյանը պատմեց իր հուշերը։*

*Մեր երիտասարդ բանվորները, որոնք չեն տեսել մռայլ անցյալը, որոնք մեծագույն բերկրանքով են իջնում լիովին մեքենայացված հանքերը և իրենց ամբողջ ուժն ու եռանդը նվիրում Հայրենիքի է՛լ ավելի ծաղկման ու բարգավաճման գործին, մեծ հետաքրքրությամբ լսեցին այս զրույցը։*

*Յուրաքանչյուր անգամ ձգտում եմ, որ զրույցներս անցնեն աշխույժ, հետաքրքիր, թեմաների քննարկմանը մասնակցեն բոլորը և, որ գլխավորն է՝ ագիտացիան ունենա անպայման գործնական հետևանք։*

*Թ. ՄՈՎՍԻՍՅԱՆ*

Ղափանի հանքվարչության № 1—2 հանքի ագիտատոր

---



# ԱՎԵԼԻ ՇԱՏ ԳԵՐԱԶԱՆՑ ՈՐԱԿԻ ԱՐՏԱԴՐԱՆՔԻ ՀԱՄԱՐ

*Այս տարվա աշնանը Լյուբլինոյի Լ. Մ. Կագանովիչի անվան մեր ձուլող-մեխանիկական գործարանում լայն շարժում ծավալվեց* յուրաքանչյուր արտադրական օպերացիա գերազանց կատարելու *համար։*

*Այդ մրցությունն սկսվեց մեխանիկական ցեխում, մեր դազգահի վրա։ Պարտիական կազմակերպությունը ջերմորեն պաշտպանեց երիտասարդ խառատների այդ նախաձեռնությունը։ Կոմունիստները բոլոր ցեխերում և աշխատամասերում բանվորներին պատմեցին մեր նախաձեռնության մասին, առաջինը արձագանքեցին դրան, և այժմ յուրաքանչյուր օպերացիա գերազանց կատարելու սոցիալիստական մրցության մեջ է ընդգրկվել գործարանի ավելի քան երկու հազար երեք հարյուր աշխատող։*

Մենք կարծում ենք, որ արտադրական օ-
պերացիաները գերազանց կատարելու համար
կարող է և պետք է մրցի յուրաքանչյուր բան-
վոր՝ ամեն մի ձեռնարկությունում: Եվ որքան
ավելի լայնորեն ծավալվի այդ մրցությունը՝
այնքան ավելի շատ գերազանց որակի ար-
տադրանք կստանա Հայրենիքը:

Սովետական արդյունաբերությունը բուռն
թափով է զարգանում: Գնալով ավելի շատ
բարձր արտադրողականություն ունեցող դազ-
գահներ ու մեխանիզմներ են ստանում
ձեռնարկությունները: Ստեղծվում են կոնվե-
յերներ, հարահոս գծեր, արտադրությունը
մասնագիտացվում է: Այս ամենը հնարավո-
րություն է տալիս ո՛չ թե օրեցօր, այլ ժամ-
առժամ բարձրացնել աշխատանքի արտա-
դրողականությունը, ավելի արագ առաջ ըն-
թանալ՝ երկրում ապրանքների լիակատար ա-
ռատություն ստեղծելու համար:

Արտադրության տեխնիկայի աճման հետ
միասին ուժեղանում է արտադրական պրո-
ցեսների մասնագիտացումը և՛ մեր գործա-
րանում: Այսպես, օրինակ՝ շոգեքարշային
քեղի (դիշլո) մշակումն այժմ կազմված է ի-
մար հաջորդող հիսուն օպերացիայից: Հե-
տևապես, որպեսզի շոգեքարշի այդ կարևորա-



գույն մասը՝ քեղը պիտանի լինի լոկոմոտի-
վի վրա երկար տարիներ հուսալի աշխատե-
լու, հարկավոր է, որ բոլոր 50 բանվորներն
էլ գերազանց կատարեն իրենց արտադրա-
կան օպերացիաները: Բանվորներից որևէ մե-
կի ամենափոքր անփութությունը կարող է ոչ
լիարժեք արտադրանք թողարկելու պատճառ
դառնալ:

Մեզ մոտ քիչ չեն եղել այնպիսի դեպքեր,
երբ շոգեքարշի՝ պողպատից, չուգունից և
բրոնզից ձուլված մասերը խոտանվել են:
Ձուլվածքի խոտանը հաճախ հայտնաբերվել է
միայն մեխանիկական մշակման վերջին օպե-
րացիաների ժամանակ, այսինքն այն բանից
հետո, երբ մեծ աշխատանք ու ժամանակ է
վատնվել այդ դետալների վրա:

Մենք հղկում ենք վագոնի օղաձգանի պը-
տուտակները՝ կատարելով յոթ օպերացիա-
ներից երկուսը: Վերջին ամիսներին մեզ մոտ
խոտան չի լինում, պլանը գերակատարում
ենք: Ավելի ուշադիր նայելով մենք նկատե-
ցինք, որ եթե դարբինները մեզ տալիս են
այնպիսի կռանվածք, ուր թեկուզ չնչին չա-
փով խախտում է թույլ տրվել ստանդարտից,
ապա դրանից ընկնում է աշխատանքի ար-
տադրողականությունը, հերթափոխության

ընթացքում սովորականից 5—10 պտուտակ
պակաս ենք հղկում։ Նույնպիսի հետևանք-
ներ է ունենում նաև կռանվածքի սխալ կի-
զումը։ Պարզվեց նաև այն, որ եթե մենք
ինքներս սխալ ենք կատարում կռանվածքի
մշակումը, ապա հաջորդ օպերացիաների
վրա աշխատող խառատները հարկադրված
են լինում շատ աշխատանք թափել, որպես-
զի դետալը չփչանա։

Յուրաքանչյուր օպերացիան գերազանց կա-
տարելու մրցությունը մեզ ստիպեց ամենից
առաջ ինքնաքննադատաբար նայել մեր աշ-
խատանքին, վերացնել մեր թերությունները։
Օրինակ՝ պտուտակների մշակումը մեզ մոտ
սխալ էր կատարվում, որովհետև շաղափի
անվաօղակը թույլ էր։ Փոխելով անվաօղակը,
կարգավորելով դազգահները՝ մենք սկսեցինք
հետագա օպերացիաների համար արտա-
դրանք տալ առանց որևէ շեղում թույլ տալու
սահմանված ստանդարտից։

Մտնելով մրցության մեջ, մենք կարծես
նոր աչքերով սկսեցինք դիտել մեր աշխա-
տանքը և մեր շրջապատի ընկերների գոր-
ծունեությունը, տեսանք կոլեկտիվ աշխա-
տանքի ամբողջ վեհությունը։ Օպերացիաները
գերազանց կատարելու մրցության առաջին



իսկ օրերից մեր գործարանի շատ աշխա-
տողներ զգալի չափով բարձրացրին աշխա-
տանքի արտադրողականությունը և խիստ
բարելավեցին որակը։ Օրինակ՝ խառատներ
ընկ. ընկ. Տրուտնևը և Շանդրովը օգոստո-
սին իրենց պարտավորությունները կատարել
էին 100,5 տոկոսով։ Հոկտեմբերին, մտնե-
լով յուրաքանչյուր օպերացիա գերազանց
կատարելու մրցության մեջ, ընկ. Տրուտնևը
պարտավորությունը կատարեց 127 տոկո-
սով, իսկ ընկ. Շանդրովը՝ 130 տոկոսով։

Մրցության շնորհիվ մեր ցեխում պակասե-
ցին խոտանից առաջացող վնասները՝ սեպ-
տեմբեր ամսվա մեկ տասներորդական տոկո-
սի դիմաց հոկտեմբերին կազմելով երկու
հարյուրերորդական տոկոս։ Ձուլման ձուլ-
ման ցեխում խոտանից առաջացող վնասնե-
րը սեպտեմբերին և հոկտեմբերին կրճատվե-
ցին 27 տոկոսով։

Գործարանում սոցիալիստական մրցության
մեջ մտան նաև ինժեներա-տեխնիկական աշ-
խատողները։ Կատարելագործելով տեխնոլո-
գիական պրոցեսները, նրանք օգնեցին բան-
վորներին գերազանց կատարելու արտադրա-
կան օպերացիաները։ Պողպատաձուլման ցե-
խի տեխնոլոգ ընկ. Ռոզանովը մշակեց ձուլ-
ման նոր սիստեմ, որը նպաստեց ձուլվածքի

որակի բարելավմանը։ Ջուլվածքի մեջ հող ընկնելու հետևանքով առաջացող խոտանը, որ հասնում էր երկու տոկոսի, այժմ 'ամբող- ջովին վերացված է։ Մեխանիկական ցեխի տեխնոլոգներ ընկ. Նրշովը, Գուսեը և ուրիշները արմատավորեցին դետալների մը- շակումը բարելավող զանազան հարմարանք- ներ։ Գործարանում կազմակերպվել են 50-ից ավելի ստախանովյան դպրոցներ, որոնցում ուսումնասիրվում են ստախանովականների բարձրորակ աշխատանքի առաջավոր մեթոդ- ները։

Օպերացիաները գերազանց կատարելու համար սոցիալիստական մրցությունը արդեն լավ արդյունքներ է տալիս։ Սեպտեմբերին գործարանում աշխատանքի արտադրողակա- նությունն աճեց 6 տոկոսով: Համախառն ար- տադրանքի թողարկումն ավելացավ 2,3 տո- կոսով: Արտադրանքի ինքնարժեքն իջավ 2,5 տոկոսով, խոտանից առաջացող վնասները պակասեցին 15 տոկոսով: Ջեռնարկությու- նում երևան եկան կոլեկտիվ ստախանովյան աշխատանքի նոր տեղամասեր։ Հոկտեմբե- րին և նոյեմբերին մեր գործարանն է՛լ ավե- լի բարելավեց արտադրական ցուցանիշները։



Դեռ երբեք մեր գործարանն այնպես ռիթմիկ ձևով չէր աշխատել, ինչպես այժմ։

Գործարանի տնտեսագետները հաշվել են, որ եթե գործարանի բանվորները հաջողու- թյամբ կատարեն իրենց պարտավորություննե- րը—գերազանց կատարեն ամեն մի օպերա- ցիա,— ապա այդ հնարավորություն կտա միայն ձուլման ցեխերում խոտանի վերացու- մից տարեկան տնտեսել երկու և կես միլիոն ռուբլի, իսկ ամբողջ գործարանում՝ առնվազն երեք միլիոն ռուբլի։

Մեր կոլեկտիվի փորձը թույլ է տալիս ո- րոշ հետևություններ անել։

Յուրաքանչյուր օպերացիայի գերազանց կատարումը նեշտացնում և արագացնում է արտադրական պրոցեսները՝ ամեն մի ար- տադրանքի թողարկման դեպքում: Դա հասց- նում է այն բանին, որ բարձրանում է բան- վորների աշխատանքի արտադրողականու- թյունը և ավելանում է բարձրորակ արտա- դրանքի թողարկումը։ Բանվորները, ձեռնար- կությունը և պետությունը մեծ օգուտ են ստանում։

Յուրաքանչյուր արտադրական օպերացիա գերազանց կատարելու մրցությունը ապա- հովում է թողարկվող արտադրանքի բարձր

ռակը: Այդ մրցությունն ամբողջ արտադրանքի որակի բարձրացման և ինքնարժեքի իջեցման պայքարի ամենից ավելի կոնկրետ և գործոն ուղին է:

Յուրաքանչյուր արտադրական օպերացիա գերազանց կատարելը, արտադրանքի էժանացման մյուս ուղիների ճիշտ օգտագործման հետ միասին, օրինակ՝ ընկ. ընկ. Մուխանովի և Լեշենկոյի մեթոդի լայն արմատավորումը, հումքի և նյութերի կոմպլեքսային տնտեսումը, ապահովում է ինքնարժեքի առավելագույն իջեցումը բոլոր օպերացիաների ժամանակ:

ԱՆՏՈՆԻՆԱ ԺԱՆԴԱՐՈՎԱ

ՕԼԳԱ ԱԳԱՖՈՆՈՎԱ

(«Պրավդա»)

---



# ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՄՈՍԿՎԱՅԻ ԳՐԱԴԱՐԱՆԸ

Սովետական Սոցիալիստական ռեսպուբլիկաների Միության Մոսկվայի Լենինի անվան, Լենինի շքանշանակիր Պետական գրադարանը աշխարհում ամենախոշորն է: Նա ՍՍՌՄ Հանրային կենտրոնական գրադարանն է, Սովետական Միության ժողովուրդների տպագիր ստեղծագործության ամենից մեծաքանակ, թանկարժեք և հազվագյուտ գրքերի ու այլ հրատարակությունների պետական պահեստարանը, գիտության բոլոր բնագավառներն ընդգրկող գիտա-մատենագրական հաստատություն:

Սովետական մարդիկ իրավամբ հպարտանում են Լենինի անվան գրադարանով, հպարտանում ոչ միայն նրա համար, որ այն ամենախոշորն ու ամենահարուստն է աշխարհում և այդ հարստության ինը տասներորդ մասը ձեռք է բերվել Սովետական իշխանության օրոք, այլև նրա համար, որ գրադարանը կատարում է մեծ Լենինի պատ-

միրանը՝ գիրքը հասցնում է ամենալայն մասսաներին, բավարարում է իր օգնությանը դիմող սովետական յուրաքանչյուր քաղաքացու պահանջները։

Գրադարանը հիմնադրվել է 1862 թվականին։ Այն ժամանակ նա ուներ 100 հազար հատոր գիրք և ձեռագրեր, որոնց մեծ մասը հավաքված էր կոմս Ն. Պ. Ռումյանցևի միջոցով, նրա թանգարանում։

Մինչև Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ ռևոլուցիան, գրադարանը գործում էր ծայրահեղ դժվարին պայմաններում. հրատարակվող գրքերից նա ստանում էր միայն մեկ օրինակ, այն էլ ոչ կանոնավոր կերպով, ունեցվածքի կոմպլեկտավորումը մեծ մասամբ կատարվում էր անհատ մարդկանց նվիրաբերումների օգնությամբ։ Բայց, չնայած այդ դժվարություններին, ցարական իշխանության ռեակցիոն հարուցած խոչընդոտներին, Ռումյանցևյան գրադարանը հանդիսանում էր ռուսական առաջավոր կուլտուրայի օջախներից մեկը։ 19-րդ դարի 60-ական թվականներից սկսած այնտեղ է աշխատել Լ. Ն. Տոլստոյը։ Ընթերցողների թվում էին Դ. Ի. Մենդելեևը, Ֆ. Մ. Դոստոևսկին և ուրիշ գիտնականներ, գրողներ ու հասարակական գործիչներ։ 1893 և 1897 թվականներին գրադարանից օգտվել և այն-



տեղ է աշխատել Վ. Ի. Լենինը. գրադարանի մատյաններում դեռևս պահպանվել են Լենինի ձեռքով գրված գիտողությունները։

Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայից հետո, Ռումյանցևյան գրադարանը, Սովետական կառավարության ամենալայն աջակցության շնորհիվ, դարձավ երկրի կուլտուր-լուսավորական խոշոր կենտրոն։ Տարեց-տարի ավելանում էին գրադարանին հատկացվող պետական միջոցները, նրան հնարավորություն տվեց մեծ չափերով գրքեր ձեռք բերելու երկրի ներսում, իսկ 1922 թվականից սկսած՝ նաև արտասահմանից։ Սովետական իշխանության հենց առաջին տարիներին գրադարանի գրքի ֆոնդը հասավ 1,5 միլիոն հատորի։ Գնալով աճում և ամրապնդվում էին գրադարանի կապերը ժողովրդի, սոցիալիստական շինարարության հետ։

1924 թվականի հունվարի 4-ին գրադարանը կոչվեց Վ. Ի. Լենինի անվան Ռուսական հանրային գրադարան, իսկ 1925 թվականին, ՍՍՌՄ Կենտգործկոմի որոշմամբ, վերակազմվեց որպես Վ. Ի. Լենինի անվան ՍՍՌՄ Պետական հանրային գրադարան։

Լենինի անվան գրադարանը երկրի վերականգնման շրջանում և ապա ստալինյան

հնգամյակների տարիներին կուլտուր-լուսավորական խոշոր աշխատանք կատարեց՝ բոլոր միջոցներով օգնելով, գիտությամբ զինելով սոցիալիզմ կառուցող սովետական մարդկանց։

Գրադարանն իր աշխատանքը ոչ մի օր չդադարեցրեց Հայրենական պատերազմի տարիներին։ Նրա աշխատողների կոլեկտիվը հիտլերականների օդային ռմբակոծություններից հերոսաբար պաշտպանում էր կուլտուրայի այդ մեծագույն օջախը, հանգցնելով նրա վրա ընկնող ռումբերը։ Իր ունեցած գրքի ֆոնդի մի մասը գրադարանը փոխադրեց երկրի հեռավոր թիկունքը։ Գրադարանը լայն օգնություն կազմակերպեց Սովետական Բանակին, ռազմական արդյունաբերությանը։ Պատերազմի չորս տարիներին գրադարան է հաճախել 2 միլիոն 800 հազար մարդ, որոնց տրվել է 10 միլիոն գիրք։ 1942 թվականին գրադարանում բացվեց մանկական ընթերցասրահ, 1943 թվականին՝ գիտական երկրորդ ընթերցասրահը, իսկ 1945 թվականին՝ երրորդը։

Վ. Ի. Լենինի անվան Պետական հանրային գրադարանը, մեր երկրի կուլտուրական կյանքում կատարած բեղմնավոր աշխատանքի համար, վերակառուցման 20-ամյակի կա-



պակցությամբ՝ 1945 թվականին ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության կողմից պարգևատրվեց Լենինի շքանշանով։

Լենինի անվան գրադարանն ունի 13 միլիոն գիրք, ժուռնալ, թերթերի կոմպլեկտներ՝ ՍՍՌՄ ժողովուրդների և աշխարհի մյուս երկրների ժողովուրդների 150 լեզուներով։ Բացի այդ, պահվում են նաև ամսագրեր, թերթեր, քարտեզներ, նոտաներ, թերթիկներ՝ սովետական տպագիր բոլոր հրատարակությունների նմուշները։ Նրա գրապահարաններում պահվում են ռուսական ռևոլյուցիոն, գիտական-հասարակական գործիչների, գրողների ձեռագրեր ու արխիվներ, լենինյան «Իսկրա»-ի համարները, ռևոլյուցիոն առաջին հրատարակությունները, Լենինի և Ստալինի աշխատությունների անլեգալ հրատարակությունները, Մարքսի և Էնգելսի աշխատությունների ռուսերեն առաջին թարգմանությունները, Ա. Ի. Գերցենի «Կոլոկոլ», «Պոլյարնայա զվեզդա» և այլ հրատարակությունները, ռուսական թերթերի և ամսագրերի կոմպլեկտները՝ սկսած 1703 թվականից մինչև մեր օրերը։ Ձեռագրերի բաժնում պահվում են համարյա բոլոր ռուս կլասիկ գրողների ձեռագրերը։

Գրադարանի հազվագյուտ գրքերի բաժնում կան բացառիկ ունիկումներ։ Պահպան-

վում է ռուսական հնության մեծարժեք հիշատակություններից մեկը՝ 1092 թվականի Արխանգելյան ավետարանը՝ փայտյա կազմով: Բավականին գրքեր կան ռուսական առաջին հրատարակություններից (1708 թ), Ռադիշչևի, Դերժավինի գրքերի առաջին հրատարակությունները, չինական «Շախմատային խաղի մասին» 1349 թ. և «Մոնղոլական դինաստիայի պատմությունը Չինաստանում» 1369 թ. հրատարակություններով: Սովետական մեծարժեք հրատարակությունների թվում պահվում են Ռուսթավելու «Վագրենավորը», հայ ժողովրդի մեծ էպոս «Սասունցի Դավիթը» և այլ գրքեր:

Ամեն տարի գրադարանն ստանում է ավելի քան 300.000 գիրք և ընթերցողներին է տալիս 7,5 միլիոն հատորից ավելի: Միության յուրաքանչյուր քաղաք կարող է գրքեր ստանալ Լենինի անվան գրադարանից, միջգրադարանային աբոնեմենտներով, գրադարանը սպասարկում է երկրի 1.200 կետերի: Գրադարանը կապված է արտասահմանյան 18 երկրների՝ Չինաստանի, Ամերիկայի, Անգլիայի, Հնդկաստանի, Ճապոնիայի, Իրանի, Ավստրալիայի և այլ երկրների գրադարանների հետ:

Գրադարանի աշխատանքները գնում են



հետևյալ հիմնական ուղղություններով. ըսպասարկում գրքերով և մատենագրական տեղեկություններով, գրքի պրոպագանդա՝ ցուցահանդեսների, մատենագրության, կոնսուլտացիաների միջոցով, ֆոնդերի ավելացումով, գրքերի գրադարանային վերամշակումով, գիտա-հետազոտական աշխատանքներով, մատենագրական ցուցակների կազմումով ու հրատարակումով և այլն:

Ընթերցողների սպասարկումը կատարվում է տասը ընթերցասրահներում, ուր տեղավորվում է 1.500 մարդ:

Լենինի անվան գրադարանը գտնվում է Մոսկվայի կենտրոնում, Կրեմլի դիմաց, բլրի վրա: Նա կազմված է երկու հիմնական շենքերից՝ հին և նոր, որոնք գտնվում են չորս փողոցների միջև, զբաղեցնում են մի ամբողջ թաղամաս, գրավելով 75 հազար քառակուսի մետր տարածություն:

Գրադարանի հին շենքը Մոսկվայի ճարտարապետական լավագույն կոթողներից մեկն է, այն կառուցվել է նշանավոր ճարտարապետ Վ. Ի. Բաժենովի նախագծով 1784 թվականին: Նոր շենքի կառուցումն սկսվել է 1930 թվականին, շենքը կազմված է 6 կորպուսից և անմիջապես միանում է հին շենքին: Նրա ճակատը դրսից զարդարված է

գրողների, գիտնականների կիսանդրիներով և բանվորի, կոլտնտեսականի, գիտնականի ֆիգուրաներով: Կորպուսներից առաջինը կառուցվել է 1939, երկրորդը՝ 1941 թվականին, ապա շենքի կառուցումն ընդհատվել է պատերազմի օրերին և շարունակվել 1948 թվականին: Ինը հարկանի կորպուսներից մեկում տեղավորված է գրքերի մեծ մասը, որոնց դարակների ընդհանուր երկարությունը հասնում է ավելի քան 250 կիլոմետրի: Գրքերի տեղաշարժը, իջեցումը, ընթերցանության դահլիճ հասցնելը մեքենայացված է: Գրադարանի բազմաթիվ բաժիններում աշխատում է 1.100 մարդ:

Սովետական գրադարանները ամենաառաջավոր գրադարաններն են աշխարհում, նրանք ծառայում են Մարքսի—Էնգելսի—Լենինի—Ստալինի վեհ գաղափարների կենսագործման, մեր երկրում կոմունիստական շինարարության վիթխարի խնդիրների իրականացման գործին: Սովետական գրադարանների թվում առաջատարը, գրադարանային գործի նոր կուլտուրա ստեղծողը, Լենինի անվան Պետական հանրային գրադարանն է, մեր Հայրենիքի կուլտուրայի խոշորագույն օջախներից մեկը:

Թ. ՍԱՐԳՍՅԱՆ

---

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Հայպետհրատի հրատարակությամբ լույս են տեսել.

Գ. Տ. ՏԻԽՈՄԻՐՆՈՎ.— ՌԿ(բ)Պ տասնմեկերորդ համագումարը: 121 էջ, գինը 1 ռ. 55 կոպ.:

Վ. ԼԵԲԵԴԵՎ.— Միչուրին: 278 էջ, գինը 6 ռ. 10 կոպ.:

ՄՈՒՐԱՑԱՆ.— Երկերի ժողովածու, Հատոր երկրորդ. 487 էջ, գինը 15 ռ. 25 կոպ.:

Ն. ՏԻԽՈՆՈՎ.— Խիզախ պարտիզանը: 34 էջ, գինը 2 ռ. 40 կոպ.:

Տ. ՍՎԱՏՈՊԼՈՒԿ.— Բոտոստրոյ: 381 էջ, գինը 15 ռ. 70 կոպ.:

ՆԱԻՐԻ ԶԱՐՅԱՆ.— Հատընտիր: 361 էջ, գինը 15 ռ. 70 կոպ.:

Ս. Ա. ՄԻՆԱՍՅԱՆ.— Բուսական սննդամթերքների գործածության նշանակությունը սննդի մեջ: 22 էջ, գինը 35 կոպ.:

---

Պատ. խմբագրի տեղակալ՝
Տ. ՎԱՐԺԱՊԵՏՅԱՆ

Գինը 50 ԿՈՊ.

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б) Армении

# БЛОКНОТ АГИТАТОРА

№ 23 1951 г.

ՎՖ 05798 Պատվեր № 1026 Տիրաժ 9150

Հայպոլիգրաֆհրատի II տպարան, Երևան,
Կնունյանցի փ. № 8, 1951 թ.։